ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 6 1962

ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆ

# „NARRATIO DE REBUS ARMENIAE". ՀՈՒՆԱՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ ՄԵԶ ՀԱՍԱԾ ՄԻ ՀԱՅ-ՔԱՂԿԵԴՈՆԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐ

Հայ միջնադարյան մատենագրությունը մեզ ավել է բազմաթիվ թարգմանական գործեր՝ ասորերենից, հունարենից, արաբերենից, վրացերենից և այլ լեզուներից, որոնք հաճախ բնագրի օրինակի արժեք են ստանում, որովհետև միշտ չէ որ նրանց բնագրերը հասել են մեզ։ Մենք սույն հոդվածում կանգ ենք առնում մի սկզբնաղբյուրի վրա, որն ունեցել է ուրիշ ճակատագիր։ Նա գրվել է հայերեն, ապա թարգմանվել հունարեն, բայց հայերեն բնագիրն անհայտ է, պահպանվել է միայն հունարեն թարգմանությունը։

Այդ սկզբնաղբյուրի վրա առաջին անգամ ուշադրություն է դարձրել Ֆրանսուա Կոմբեֆիսը, որը հրատարակել է 1648 թ. «Narratio de rebus Armeniae» («Պատմություն հայոց հարցի մասին») խորագրով։ Դրանից հետո այն ունեցել է մի քանի հրատարակություն։

Մենք նպատակ չունենք այստեղ հանգես գալու այդ հազվագյուտ սկզբնաղբյուրի մասին որևէ ուսումնասիրությամբ։ Դա փայլուն կերպով իրականացրել է բելգիացի հայագետ Ժ. Գարիտը իր ծավալուն և մեծարժեք աշխատությամբ[1]։ Մենք սոսկ ներկայացնում ենք հայերեն թարգմանությունը մի բնագրի, որը նախօրոք եղել է հայերեն։ Թարգմանությունը ուղեկցող ծանոթագրությունները գերազանցապես կազմված են Ժ. Գարիտի ուսումնասիրության հիման վրա։

«Narratio»-ն մի քաղկեդոնական հեղինակի գործ է, որը պատկանում է հայ և բյուզանդական եկեղեցիների միության կողմնակիցների թվին։ Նրա գրչին պատկանող այս բնագիրը արժեքավոր է և առանձնահատուկ բնույթ ունի, որովհետև նախ՝ հայ միաբնակ սկզբնաղբյուրներից հայտնի փաստերի ու դեպքերի նկարագրությունը այստեղ տրվում է այլ լույսի տակ և ապա՝ նրա մեջ կան բազմաթիվ փաստեր, որոնք չեն արձանագրված հայ միջնադարյան մատենագրության կողմից։

[1] Gérard Garitte, La Narratio de rebus Armeniae, édition critique et commentaire. Corpus Scriptorum Christianorum Orientalium, vol. 132, Subsidia tome 4, Louvain, 1952, ուր և մանրամասն գրականությունը։ Այս գրքի մասին տես Գ. Համելյանի գրախոսականը «Բազմավէպ»-ում, 1952, էջ 186—189, Ն. Ակինյանի գրախոսականը «Հանդէս ամսօրեայ»-ում 1953, սյուն. 466—476, նաև Հ. Ա. Անասյան, «Հայկական մատենագիտություն», հատ. Ա, Եր., 1959, սյուն. 808—811։ Ժ. Գարիտը իր ուսումնասիրության մեջ օգտագործել է „Narratio"-ի հայտնի երեք ձեռագրերը։ Գրքի լույս ընծայումից հետո նա ծանոթացավ „Narratio"-ի մի չորրորդ ձեռագրի հետ, որի տարընթերցվածքները տվել է առանձին հոդվածում։ Տե՛ս նրա Un nouveau manuscrit de la „Narratio de rebus Armeniae", Le Museon, tome LXXI, 1958.

«Narratio»-ի գրության ժամանակի և հեղինակի մասին գրականության մեջ կան իրարամերժ կարծիքներ։ Ժ. Գարիտը գալիս է այն եզրակացության, որ այն գրվել է շուրջ 700 թվականին և համարում է անանուն հեղինակի գործ։ Հունարեն թարգմանության մեջ եղած սխալները և հայկաբանությունները, որոնք շատ որոշակի կերպով մատնացույց է անում Ժ. Գարիտը, թույլ են տալիս ենթադրելու, որ նրա թարգմանիչը եղել է հայ և լավ չի ընկալել հունարեն լեզվի առանձնահատկություններն ու նրբությունները[2]։

«Narratio»-ն մեզ հասել է հունարեն, բայց պարզ է, որ այն շարադրվել է ոչ հույն ընթերցողների համար։ Բնագրում եղած առանձին մանրամասնություններ, որոնք ոչ մի կերպ պարզաբանված և մեկնաբանված չեն, միայն հայ ընթերցողին կարող էին հասկանալի լինել։ «Narratio»-ում ընդունված թվարկման սիստեմը ևս հուշում է հայ սկզբնաղբյուրների (հիշվում են միաժամանակ պարսից արքայի և բյուզանդական կայսրի գահակալության տարեթվերը կամ էլ միայն պարսից արքայի)։

Ինչպես ցույց է տվել Ժ. Գարիտը, «Narratio»-ն բնագրական տեսակետից գալիս է հայերեն մի ընդհանուր աղբյուրից, որը դեռ միջնադարում օգտագործվել է տարբեր հեղինակների կողմից։ Այն աղբյուր է ծառայել հայերեն թարգմանությամբ մեզ հասած «Թուղթ Փոտոյ պատրիարքի առ Զաքարիայ կաթողիկոս Հայոց Մեծաց»[3] վերնագիրը կրող գործի, ապա «Վրաց և հայոց բաժանման մասին» վրացերեն մի աշխատության, որի հեղինակն է IX դարի երկրորդ կեսի վրաց կաթողիկոս Արսեն Սափարացին[4]։ «Narratio»-ն մասամբ օգտագործվել է նաև հունարեն թարգմանությամբ մեզ հասած հայ կաթողիկոսների ցուցակում[5]։

«Narratio»-ն շարադրում է հայ եկեղեցու պատմությունը և նրա հարաբերությունները բյուզանդական եկեղեցու հետ 325 թվականից (Նիկիայի առաջին Տիեզերական ժողովից) մինչև 700 թվականը, կանգ առնելով նաև ժամանակակից քաղաքական պատմության զանազան կողմերի վրա։ Այդ ժամանակաշրջանը բաժանվում է երեք հիմնական մասերի, առաջին՝ հայ-բյուզանդական եկեղեցիների միության ժամանակաշրջան, երկրորդ՝ հայ-բյուզանդական եկեղեցիների անջատման ժամանակաշրջան, և երրորդ՝ միության նոր փորձերի ժամանակաշրջան, փորձեր, որոնք սակայն ապարդյուն եղան։

Առաջին հայացքից սոսկ դավանաբանական բնույթ կրող պայքարը, որ մղվում էր միաբնակների և երկաբնակների միջև, որը մանրամասն նկարագրված է «Narratio»-ի մեջ, ունի խորը քաղաքական բովանդակություն։ Խու-

---

2 Ն. Ակինյանը ելնելով թարգմանչի ոճական առանձնահատկություններից, ինչպես և այլ նկատառումներից, ենթադրում է, որ թարգմանությունը կատարվել է XI—XII դարերի ընթացքում, Ներսես Շնորհալու օրոք, հայոց և հայ-հոռոմոց դավանաբանական վեճերի ժամանակ։ Տե՛ս «Հանդէս ամսօրեայ», 1953, սյուն. 474։

3 Фотия Архиепископа Константинопольского О гробе Господа нашего Иисуса Христа и другие малые его творения на греческом и армянском языке, изданные с предисловием А. И. Пападопуло-Керамевсом и переведенные Г. С. Дестунисом и Н. Марром. Православный Палестинский Сборник, 31-й выпуск, С.-Петербург, 1892, стр. 179—226.

4 Սրա հայերեն թարգմանությունը տե՛ս Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, Երևան, 1934։

5 Այս ցուցակը հրատարակել է Ժ. Գարիտը իր վերոհիշյալ ուսումնասիրության հավելվածում, տե՛ս անդ, էջ 402—405։

սափելու համար Բյուզանդիայի ձուլիչ քաղաքականությունից և ձգտելով ինքնուրույնության, նրա տիրապետության տակ ապրող ժողովուրդները, հատկապես հայերն ու ասորիները, գիտակցաբար դիմեցին բյուզանդական եկեղեցուց անջատվելու միջոցին։ Այս երևույթը ձեռնտու էր նաև Բյուզանդիայի վաղեմի թշնամի Սասանյան Իրանին։ Վերջինս ամեն կերպ հովանավորում էր այդ ժողովուրդների անջատողական ձգտումները, միջամտում ավելի խորացնելու համար երկու եկեղեցիների միջև գոյացած անջրպետը, մի բան, որ իր հստակ արտահայտությունն է գտել նաև «Narratio»-ում։ Այնտեղ նշված է, որ Սուրմակի կաթողիկոսության ժամանակ, Թեոդոսիոս Փոքրի թագավորության 37-րդ տարում, հայերը Պարսից արքայի հրամանով սկսեցին իրենց եպիսկոպոսներին ձեռնադրել ինքնուրույն կերպով, առանց Կեսարիայի միջամտության։ Եվ դա տեղի է ունեցել 451 թվականից՝ Քաղկեդոնի ժողովից առաջ, երբ հայոց եկեղեցին վերջնականապես բաժանվեց բյուզանդականից։ «Narratio»-ում վառ գծերով ցույց է տրված, որ հայերի պայքարին սերտորեն միացան նաև ասորիները, որ հայերի ու ասորիների միջև ստորագրվեց «համաձայնություն» հավիտյանս միասին լինելու մասին։ Սակայն Բյուզանդիան չէր հրաժարվում հայերին տիեզերական եկեղեցուն միացնելու իր դիտավորություններից։ «Narratio»-ն ապացույցն է այն բանի, թե ինչպես Բյուզանդիան անդադար պայքար էր մղում իր նպատակների իրականացման համար, կանգ չառնելով բռնությունների և սպառնալիքների առաջ։ Պատահական չէր ապարապես Մուշեղ Մամիկոնյանի Մավրիկիոս կայսեր Կոստանդնուպոլսում տված պատասխանը, ուր ասված է, թե մարզպան Սուրենին սպանող և Կոստանդնուպոլսում ապաստան գտած Վարդան Մամիկոնյանը երկդավանություն է ընդունել «վախից դրդված»։ Նույնն է ասված նաև Եզր կաթողիկոսի մասին, որը Թեոդոսուպոլսում քաղկեդոնականությանը հարեց «ահաբեկվելով» Հերակլիոս կայսրից։

Այս պայքարն ու վեճերը, սակայն, արդյունք չտվեցին, հայերը իրենց ազգային շահերը չզիջեցին Բյուզանդիային և, ինչպես «Narratio»-ում է ասված, «անբուժելի» մնացին։ Ինչ խոսք, եղել է նաև հայերի մի չնչին խավ, որը տարբեր թելերով կապված լինելով Բյուզանդիային, Հայաստանում աշխույժ աշխատանք էր տանում քաղկեդոնականության պաշտպանության և տարածման ուղղությամբ։ Այս խավին է պատկանել նաև «Narratio»-ի հեղինակը։



«Narratio»-ի հայերեն թարգմանությամբ լույս է տեսնում առաջին անգամ։ Այն կատարված է Ժ. Գարիտի կազմած գիտական բնագրից[6]։ «Narratio»-ում պատահում են ժամանակագրական սխալներ կամ տարբերություններ մեզ հայտնի աղբյուրների համեմատությամբ, որոնք մանրամասն պարզաբանված են Ժ. Գարիտի աշխատության մեջ։

[6] Gérard Garitte, La Narratio de rebus Armeniae, pp. 26—47.

Պատմություն սուրբ Գրիգորի[1] օրերից սկսած մինչև այժմ՝ նրա սրբոց հաջորդների ու նրանց ժամանակակից հռոմեական և պարսկական թագավորների մասին. գիտենալու համար այն, թե մինչև երբ նրանք *(Գրիգորի հաջորդները)* պահպանեցին սուրբ Գրիգորից և Նիկիայի ժողովից ստացած ուղիղ հավատքը, երբ և ում կողմից մոլորվեցին նրանք, ինչ բռնացք ունեցան, և այն մասին, թե ինչպիսի հուզեր ծագեցին հավատի շուրջը, և թե ինչպես նրանք մնացին մոլորության մեջ մինչև այսօր:

*Ամենաստուգվածաներ և սուրբ Կոստանդինի[2] ժամանակ տեղի ունեցավ Նիկիայի ժողովը ուղղված Արիոսի դեմ, Տրդատի[3] ԼԴ [34] տարին և սուրբ Գրիգորի Խոր վիրապից դուրս գալու տասներորդ տարին. սուրբ Արիստակեսի եպիսկոպոսության[4] օրերին, նրա հոր կենդանության ժամանակ: Այդ ժողովին մասնակցեց նա (Արիստակեսը):*

*Ապա եպիսկոպոս եղան Վրթանեսը[5], Գրիգորիսը[6], Հուսիկը[7], Փառներսեհը[8] Աշտիշատ գյուղի Ասպրակինից[9], ապա սուրբ Ներսեսը[10]:*

*Ապա Հայոց թագավոր դարձան Խոսրովը[11], Տիրանը[12], Արշակը[13], Վարազդատը[14], Պապը[15], Արշակը[16]:*

---

1 *Գրիգոր Լուսավորիչ (302—326):*

2 *Կոստանդին Մեծ (324—337):*

3 *Տրդատ III (287—332):*

4 *Եպիսկոպոսության տակ պետք է հասկանալ կաթողիկոսությունը: «Narratio»-ի մեջ առաջին անգամ կաթողիկոս է անվանվում Ներսես Բ-ը: Արիստակեսը կաթողիկոս դարձավ իր հոր կենդանության օրոք:*

5 *Վրթանես (333—341):*

6 *Գրիգորիսը Վրթանեսի որդին էր, իսկ հաջորդած Հուսիկ կաթողիկոսի եղբայրը: Narratio»-ում նա հիշվում է գլխավոր Հայոց կաթողիկոսների թվում, բայց իրականում նա Գրիգոր Լուսավորչի և Տրդատի կողմից ուղարկվել է որպես եպիսկոպոսապետ Աղվանից աշխարհ, որ և վախճանվել է եղեռնական մահով 337—338 թթ.:*

7 *Հուսիկ (341—347):*

8 *Փավստոս Բուզանդի մոտ նա հիշատակվում է որպես Փառեն:*

9 *Ժ. Գարիտը անթարգմանելի Ասպրակին («Ἀσπράκων») բառը համարում է ἀκάρπων (անպտուղ) բառի խեղաթյուրված արտահայտություն.*

10 *Ներսես Մեծ (353—373):*

11 *Խոսրով Կոտակ (332—338):*

12 *Տիրան (338—345):*

13 *Արշակ II (345—367):*

14 *Հայկական աղբյուրները ցույց են տալիս, որ այս Վարազդատը թագավորեց Պապի սպանությունից հետո:*

15 *Պապ (369—374):*

16 *Փավստոս Բուզանդի մոտ այս մասին գրված է հետևյալը. «Ապա յետ մահուան Մանուէլի զօրավարին Հայոց ոչ իմն կարաց հաստատել ի վերայ աշխարհին թագաւորութեանն Արշակայ. այլ բազումք ի Հայոց նախարարացն անտի եկին գնացին առ թագաւորն Պարսից, և մատնեցին նմա զաշխարհն Հայոց. և խնդրեցին ի նմանէ թագաւոր Արշակունի: Եւ նորա յանձին կալեալ մեծաւ խնդութեամբ ընդ իւր ձեռն տալով իւրով բանիւ ի նմին աւուր ի թագաւորութենէն Հայոց Արշակունի, և նովաւ յինքն գրաւել զաշխարհն Հայոց: Ապա գտանէր*

Նրա ժամանակ Հայաստանը բաժանվեց, կառուցվեց Թեոդոսուպոլիսը, որը նախկինում գյուղ էր և կոչվում էր Կալի Արխե այն պատճառով, որ երբ մեծ առաքյալ Բարթուղիմեոսը Պարթևաստան գնալիս Եփրատ գետում մկրտեց Պարսից արքայի եղբորորդուն և նրա հետ միասին երեք հազար մարդ, այնտեղ նա կառուցեց ամենասրբուհի Աստվածածնի անվան (նվիրված) տաճար, և այդ վայրում գտնվող գյուղն անվանեց Կալի Արխե (Բարի սկիզբ)։ Եվ Թեոդոսիոս Մեծը[17] ծանոթանալով այդ վայրին և նրա ջրին, հավանեց այն և կառուցեց այնտեղ հոյակապ մի քաղաք և վերանվանեց այն Թեոդոսուպոլիս։ Նրան (Թեոդոսիոսին) ենթարկվեց Մեծ Հայքի թագավոր Արշակը[18], իսկ Հայոց թագավոր Խոսրովը, թագավորելով Հայոց երկրում, ենթակա էր Պարսից Շապուհ արքային, որին հենց ինքը Շապուհը չորս տարի անց զրկեց իր թագավորությունից։

Թեոդոսիոս Մեծի ժամանակ տեղի ունեցավ ՃԾ [150] հայրերի սուրբ ժողովը Կոստանդնուպոլսում[19] ընդդեմ հոգեմարտ Մակեդոնի, և նզովեցին նրան։ Այդ նույն տարիներում Հայոց երկրում եպիսկոպոս էր սուրբ Ներսեսը, իսկ հավատո հանգանակը, որն ստացել էին սուրբ հայրերից, Վռամշապուհ թագավորի[20] և նրա որդու Արտաշեսի[21] ժամանակ մեկն էր և նույնը։ Նրանցից հետո հայոց վրա տիրեցին մարզպանները։

Թեոդոսիոս Փոքր կայսեր[22] տասնհինգերորդ տարում կայացավ երրորդ ժողովը[23] երկու հարյուր հայրերի, որոնք նզովեցին Նեստորին։ Այդ ժողովից հետո տեղի ունեցած երկրաշարժի աղետից տեր Աստծու մոտ ազատություն գտնելու համար Կոստանդնուպոլսի արքեպիսկոպոս երանելի Պրոկղի[24] կողմից հորինվեց «Սուրբ աստվածը»։

Այդ ժամանակվանից ուղղափառ եկեղեցին ընդունեց երեքսրբյան հիմնը ըստ սերովբեների փառաբանության, ինչպես որ սովորել էր Եսայի մարգարեից[25]։ Սուրբ Պրոկղից առաջ վեճ էր գնում երեքսրբյան հիմնի շուրջ «որ խաչեցար»-ի հավելման համար։ Իսկ Սաբելիոսը[26], լինելով παλαιός[27] և միաբնակ, և նույն աղանդից բազմաթիվ հետևորդներ, որոնք պաշտպանում էին «որ խաչեցար»-ը նզովվեցին և բանադրվեցին։

---

ի նմին աւուր մանուկ մի անուն Խոսրով, և կապեաց թագ ի գլուխ նորա. ...Արշակ արքայ Միրժեցաւ տեղի եւ չոգաւ գնաց ի սահմանս Յունաց. և էին թիկունք Արշակայ թագաւորին Յունաց, և Խոսրովու թագաւորին Պարսից (Փաւստոս, Զ, 1)։

17 Թեոդոսիոս Մեծ (379—395)։

18 Տե՛ս վերը, ծան. 9։

19 Տիեզերական երկրորդ ժողովը Կոստանդնուպոլսում տեղի ունեցավ 381 թ.։

20 Վռամշապուհ (389—414)։

21 Արտաշես (422—428)։

22 Թեոդոսիոս II Փոքր (408—450)։

23 Երրորդ տիեզերական ժողովը տեղի ունեցավ Եփեսոսում 431 թ.։

24 Պրոկղոս պատրիարք (434—447)։

25 Հմմտ. Եսայի, Զ. 3 «և (սերովբէք) աղաղակէին մի առ մի և ասէին, սուրբ, սուրբ, սուրբ Տէր զօրութեանց...»։

26 Սաբելիոսը մոնարխիանիստների (աստծուն և Քրիստոսին նույն անձնավորությունը համարողների) աղանդապետն էր, որը բանադրվեց պապ Կալիքստոսի (217—222) կողմից։

27 παλαιός հունարեն նշանակում է «հին» և տվյալ նախադասության մեջ անիմաստ է։ Մեզ թվում է, որ հայերեն բնագրում պետք է որ եղած լինենր «Հէն» բառը (սեռ. Հինի), որը թարգմանիչը շփոթել է «հին» բառի հետ և թարգմանել παλαιός։

Նույն այն Թեոդոսիոսի ժամանակ երանելի Փլաբիանոսը[28] Թագավորանիստ քաղաքի պալատում պաշտոնանկ արեց պիղծ Եվտիքեսին և նրան նզովեց[29]: Իսկ ինքը Եվտիքեսը եկավ և խնդրեց Դիոսկորոսին[30], իսկ վերջինս էլ պահանջեց կայսրից, որպեսզի նա Եփեսոսում գումարի նոր ժողով՝ դատապարտելու համար սուրբ Փլաբիանոսին և արդարացնելու պիղծ Եվտիքեսին: Սակայն Դիոսկորոսն ու Եվտիքեսը մնացին մենակ, ինչպես ագռավը անապատում և բուն ավերակների մեջ[31]:

Հռոմի երանելի պապ Լևոնը[32] իմանալով եկեղեցու շփոթման մասին, սուր կերպով պախարակեց Թեոդոսիոս կայսեր: Նա պահանջեց տիեզերական ժողով գումարել, բայց այդ մտադրությունը լուծյան մատնվեց կայսեր մահվան պատճառով[33], բայց Մարկիանոսը[34] գահ բարձրանալով իրականացրեց այդ մտադրությունը:

Սուրբ Սահակի[35] մահվանից վեց տարի անց տեղի ունեցավ Շահապիվանի ժողովը[36]: Երանելի սուրբ Սահակը վախճանվեց իր կյանքի ՃԺ [110] տարում և փոխեցավ ի տեր: Եպիսկոպոսության աթոռը նրա հրամանով ժառանգեց Հովսեփը[37], որի տասներկուերորդ տարում Հազկերտը[38] պահանջեց, որ Հայոց աշխարհում կրակապաշտություն (հաստատվի): Թեոդոսիոս Փոքր կայսեր ԼԷ [37] տարում նվազեց Հայոց եպիսկոպոսների թիվը, նրանց մեջ ակնառու կերպով հանդես եկավ հանդգնությունը և նրանց երեցները (գլխավորները) սկսեցին իրենք ձեռնադրել եպիսկոպոսներ: Պարսից արքայի հրամանով տիեզերական եկեղեցու օրենքները բաժանվեցին ու գրվեցին: Այդ հանդգնությունը սկիզբ առավ Սուրմակի[39] աթոռակալության ժամանակվանից և (այն տարածված էր) հատկապես նրա երկրի եպիսկոպոսների մեջ: Այդ (հանդգնությունը)[40] մինչև օրս անբուժելի մնաց:

Մեր տիրոջ Հիսուս Քրիստոսի գալուստից մինչև Մեծն Կոստանդինի թագավորության յոթերորդ տարին, երբ (գումարեց) Նիկիայի ժողովը՝ ՅԺԵ [315] տարի, իսկ Նիկիայի ժողովից մինչև Կոստանդնուպոլսի ժողովը, որ կայացավ Թեոդոսիոս Մեծի Ե [5] տարին՝ ՀԳ [73] տարի: Նրանից էլ մինչև Եփեսոսի առաջին ժողովը, որը գումարվեց Թեոդոսիոս Փոքրի ժամանակ նրա թագավո-

---

28 Փլաբիանոս պատրիարք (446—449):

29 Դա 448 թվականի նոյեմբերի 22-ին էր: Եվտիքեսը (378—454) միաբնակության հիմնադիրն է:

30 Դիոսկորոսը Ալեքսանդրիայի պատրիարքն էր (341—451): Նա 449 թ-ին Եփեսոսում գումարեց «ավազակային» կոչված տիեզերական ժողովը և միաբնակությունը հայտարարեց պետական կրոն: Սակայն 451 թ. Քաղկեդոնի ժողովում բանադրվեց և աքսորվեց:

31 Հմմտ. Սաղմոս ՃԱ (ՃԲ), 7:

32 Լևոն Մեծ պապ (440—461):

33 Թեոդոսիոս II-ը վախճանվեց 450 թվականի հուլիսի 28-ին:

34 Կայսր Մարկիանոսը (450—457) տիեզերական ժողովը գումարեց 451 թ. Քաղկեդոնում:

35 Սահակ Մեծ, Ներսես Մեծի որդին (389—438):

36 Շահապիվանի ժողովի գումարման թվականի, ինչպես և Սահակ Մեծի մահվան թվականի մասին մանրամասն տես Ժ. Գարիտի մոտ (էջ 88 և հաջորդ):

37 Հովսեփ Ա Հողոցմեցի (444—454):

38 Պարսից արքա Հազկերտ II-ը (438—457):

39 Խոսքը բուն [illegible] Սուրմակ կաթողիկոսի մասին է (մոտ. 444 թ.):

40 Նկատի ունի առանց Կեսարիայի միջամտության, ինքնուրույն կերպով եպիսկոպոս ձեռնադրելու իրավունքը:

թյան ԺԵ [15] տարում՝ ԽԷ [47] տարի։ Նրանից էլ մինչև Դիոսկորոսի (դատապարտված) Եփեսոսի ժողովը, որը գումարվեց նույն կայսեր օրոք՝ ԻԲ [22] տարի։ Նրանից էլ մինչև Քաղկեդոնի սուրբ ժողովը, որը կայացավ Մարկիանոսի թագավորության երկրորդ տարում՝ Ե [5] տարի։ Նրանից էլ մինչև Անաստաս կայսեր թագավորությունը[41] Խ [40] տարուց ավելի։

Այն ժամանակ միաբնակներ Դիոսկորոսն ու Եվտիքեսը մեծ խռովություն բարձրացրին։ Վշտացած էր Անտիոքի Սևերոսը[42], Ալեքսանդրիան և սուրբ քաղաքը[43], որովհետև նույն ախտով տառապող պալատականներից ոմանք իրենց կողմը քաշեցին կայսեր և ամբողջ աշխարհը խռովությամբ լցրին։ Միջագետքը և այլ երկրներ այդ նույն պղծությամբ պղծեցին, ատելով բոլորին նզովել Քաղկեդոնի սուրբ և տիեզերական ժողովը և խոստովանել՝ ինչպես Դիոսկորոսն ու Եվտիքեսը Քրիստոսի վրա աստվածության և մարդկության մեկ բնություն։ Նրանք սահմանեցին նաև «սուրբ աստված»-ի վերջում կարդալ «որ խաչեցար»-ը, մի բան, որ այդ դեպքերից մի քիչ առաջ Անտիոքացի Պետրոս Թափիչը ավելացրած լինելու համար նզովվել էր այն ժամանակվա սուրբ հայրերի կողմից, որովհետև աստվածության սուրբ Երրորդությունը, հիմար Նեստորի պես, չորրորդություն էր քարոզում։ Նրանք ովքեր ուղղափառ մնացին և չենթարկվեցին Անաստաս կայսեր, անզգամը բոլորին աքսորեց և դաժան մահվան դատապարտեց։

Այդ օրերին անիծյալ ոմն Տիմոթեոս եպիսկոպոս[44] բազմաթիվ ճառեր հորինեց ընդդեմ մեկ Քրիստոսին երկու բնությամբ դավանողների, ինչպես և անարգանքներ ընդդեմ Քաղկեդոնի ժողովի։

Դրանից հետո Հուստինոս կայսեր և պարսից (արքա) Կավատի ժամանակ ոմն Հուլիանոս Ալիկառնացի եպիսկոպոս և Հակոբ Բաթնացի[45] եպիսկոպոս բաժանվեցին միմյանցից։ Այս Հուլիանոսն ասեց, թե Փրկիչը երկնքից անապական մարմին ստացավ և միացավ սուրբ Մարիամին նրա որովայնից դուրս, նրա արգանդից դուրս, և ոչ ինչպես բոլոր կանայք։

Ելնելով աղանդավորների խոսքերից, որոնք ասում են. «Այս է հացն որ յերկնից իջեալ է, զի որ ուտիցէ ոք ի սմանէ մի մեռանիցի»[46] և նույնպես «Ես եմ հացն կենդանի, որ յերկնից իջեալ։ Եթէ ոք ուտիցէ ի հացէ յայսմանէ, կեցցէ յաւիտեան. և հացն զոր ես տաց մարմին իմ է, զոր ես տաց վասն կենաց աշխարհի»[47]։

Ահա այս էր վկայակոչում այն անմիտը, անգիտանալով գրության բանին, որն ասում է. «Եւ բանն մարմին եղև եւ բնակեաց ի մեզ»[48] և որ «եւ ծնաւ զորդին իւր զանդրանիկ, և պատեաց ի խանձարուրս եւ եդ զնա ի մսուր»[49], և

41 Անաստասիոս կայսր (491—518)։

42 Անտիոքի պատրիարք Սևերոս (512—518)։

43 Խոսքը Երուսաղեմի մասին է։

44 Նկատի ունի Տիմոթեոս Կուզին։ Նա Ալեքսանդրիայի պատրիարք դարձավ 457 թ., հեռացվեց 459/460 թ. և վերականգնվեց իր աթոռի վրա 15—16 տարի անց 475/476 թթ.։ Մահացել է 477 թվականին։

45 Նկատի ունի Հակոբ Սարուգացուն, որ 518/519 թթ. դարձավ Բաթնայի եպիսկոպոս և մահացավ 521 թ.։

46 Տես Հովհաննես, Զ, 50։

47 Նույն տեղում, 51—52։

48 Նույն տեղում, Ա, 14։

49 Տես Ղուկաս, Բ, 7։

որ «ոգի մարմին եւ ոսկերս ոչ ունի»[50]: Նրանք չգիտեին, որ ամենաճիշտ (ճանապարհով) է ընթանում Աստուծո եկեղեցին, որ նա է (Աստված) նրա ուղեցույցը և այն (եկեղեցին) երբեք չի մոլորվել: Դրանից էլ նրա հետևորդները անվանվեցին հուլիանականներ, Հակոբինը՝ հակոբիկներ, իսկ Սևերոսինը՝ սևերիանոսներ:

Հուլիանականները ընդամենը երեք եպիսկոպոս ունեին: Հուլիանոսի մահից հետո նրա (մնացած) երկու ընկերները գիտենալով, որ սուրբ հայրերի կանոնների համաձայն, եպիսկոպոս ձեռնադրելու համար պետք է առկա լինեն առնվազն երեք եպիսկոպոս, նախքան Հուլիանոսին գերեզման իջեցնելը նրա և իրենց ձեռքով եպիսկոպոս ձեռնադրեցին, այդ պատճառով էլ նրանք անվանվեցին նեկրոխիրոտոնիտոս[51] և մինչև այժմ պատվում են Հուլիանոսի աջը:

Բայց նորից նվազեցին այս հերձվածի եպիսկոպոսները և որովհետև իրավունք չունեին ձեռնադրվելու իրենց հերձվածի (գլխավորողներ) դիմեցին Հայոց եպիսկոպոսներին: Այդ նպատակով նրանք բարեկամացան Տարոնի եպիսկոպոս Ներշապուհին[52], որը Կավատի ԺԹ [19] տարին ստացավ եպիսկոպոսությունը և շատ տարիներ վարեց (այդ պաշտոնը) իր ընկերոջ ասորի Աբդիշոյի հետ միասին, որը Սասունին մոտիկ Սարեբա վանքից էր[53]: Նրանք ասում էին, թե «բոլորը մոլորվել են, գնալով Նեստորի հետևից և Քաղկեդոնում՝ նրա նմանների և որովհետև ոչ մի կերպ չենք կարող ձեռնադրվել, դիմել ենք, որ ձեր բարեպաշտ ձեռնադրությամբ եպիսկոպոս դառնանք»:

Ինչպես վերևում ասացինք, նրանք հրաժարվեցին սուրբ Գրիգորի ավանդությունից, անտեսելով Կեսարիայի աթոռից և հրաման ստացան Պարսից արքայից, որ իրենք կատարեն իրենց ձեռնադրությունը: Նրանք ասում էին, թե «սուրբ Գրիգորից ենք ստացել ձեռնադրությունը և նրա աշակերտներն ենք ի Քրիստոս»:

Երբ Ներշապուհ եպիսկոպոսը այդ հայտնեց Ներսես կաթողիկոսին[54], որն Աշտարակից էր և ուրիշ եպիսկոպոսների և ազատների, որոշվեց մեծ ժողով գումարել Դվին քաղաքում[55] նույն այն Ներսես կաթողիկոսի քառներորդ տարում, Հուստինոս կայսեր[56] ԺԳ [13] տարում, և Պարսից Խոսրով արքայի ԻԴ [24] տարում, Ցիտարուզիտի[57] նահատակության տարում, Հայոց թվականության սկզբում, այն ժամանակ, երբ նզովեցին Քաղկեդոնի սուրբ ժողովը որպես նեստորական ըստ Աբդիշոյի գրության[58], որովհետև այդ (նույն) տարում թարգմանեցին Աբդիշոյի կողմից բերված վերոհիշյալ գրությունները,

---

50 Նույն տեղում, ԻԳ, 39:

51 «Մահացածի կողմից ձեռնադրված»:

52 Համեմ. Գիրք Թղթոց, էջ 52 «Ներշապուհ եպիսկոպոս Տարօնոյ և Մամիկոնենից»:

53 Նույն տեղում, էջ 54 «Աբդիշոյ երէց, ի վանաց Սարեբայի»:

54 Ներսես II Բագրևանդցի (548—557): Հովհաննես Դրասխանակերտցին նրա մասին հիշատակելով ասում է. «զՆերսէս ի գաւառէն Բագրեւանդայ, ի գեղջէ Աշտարակայ»:

55 Դվինի եկեղեցական ժողովը տեղի ունեցավ 554 կամ 555 թվին:

56 Հուստինիանոս I (527—565):

57 Ցիտարուզիտի մասին մանրամասնություններ է տալիս Հովհաննես Դրասխանակերտցին (տես Պատմություն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 64): Ցիտարուզիտի վկայարանի ավերակները Դվինի հնագիտական պեղումների ժամանակ հայտնաբերվել են: Տես Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, հտ. Ա, Երևան, 1952:

58 Ասորոց եպիսկոպոս Աբդիշոյի թուղթը Հայոց Ներսես Բ կաթողիկոսին տես Գիրք Թղթոցում, էջ 62—65:

որոնք զրկել էին Տիմոթեոսի[59] և սարի Ցիլիքսի[60] կողմից և որոնք ուղղված էին Քաղկեդոնի ժողովի և նրանց դեմ, ովքեր ի վերա Քրիստոսի, մեր աստուծո խոստովանում էին երկու բնություն։ Նրանք ընդունեցին այդ գրվածքները և նույն այն ժողովում, որը կայացավ Դվին քաղաքում, դավանեցին մեկ բնություն աստուծո բանին և մարմնի, և որ անմահ բնությամբ նա խաչվեց և մահացավ, դրա համար էլ «Սուրբ աստված»-ին ավելացրին նաև «որ խաչեցար»-ը ըստ Պետրոս Թափիչի, որը տառապում էր Սաբելիոսի (ախտով) և նզովքով որոշեցին չհաղորդվել Երուսաղեմի և Նոր Հռոմի հետ և նրանց հետ, ովքեր ի վերա մեր տիրոջ Հիսուս Քրիստոսի խոստովանում են երկու բնություն։ Նրանք Աբդիշոյին եպիսկոպոս ձեռնադրեցին, ինչպես և հակոբիկ Եվտիքեսին և նրանց երկու այլ ընկերներին, որոնցից մեկը հուլիանական էր, իսկ մյուսը՝ այլ աղանդի կողմնակից, որոնց ձեռնադրելով ուղարկեցին Ասորիքի Միջագետք առ հավետ պահելու որոշմամբ միաբանությունը միմյանց հետ, որը ամրապնդեցին ինքնագիր գրությամբ։

Երկար ժամանակ անց ոմն Վարդան իշխան[61] սպանեց պարսիկ բանակալ Սուրենին և ապստամբելով՝ Հայաստանից փախչում է Կոստանդնուպոլիս՝ Խոսրովի խ [40] տարում, և սուրբ Սոֆիան կառուցող Հուստինիանոսի Լ [30] տարում։ Վարդանը և իր հետևորդները չէին հաղորդվում (հույների հետ) ասելով որ «մեր վարդապետներից չունենք հրաման հաղորդվելու ձեզ հետ»։ Այդ առթիվ կայսրը հրամայեց նույն այս Վարդանին հրավիրել Հայոց եպիսկոպոսներին և վարդապետներին և հարցը ճշգրիտ քննել։ Կոստանդնուպոլսում կայացավ մեծ ժողով, որին անվանում են հինգերորդ ժողով, ընդդեմ աղանդավոր ոմանց և միաբանելով, հրավիրեցին Վարդանին և նրա հետևորդներին սուրբ Սոֆիայի մի դուռը, որը մինչև օրս կոչվում է Հայոց Դուռ և այն ժամանակ նզովեցին Օրիգենեսին, Եվագրիոսին, Դիդիմոսին, նեստորականներին, հակոբիկներին, հուլիանականներին, գայանոսականներին և ընդհանրապես Եվտիքեսի և Դիոսկորոսի աղանդի կողմնակիցներին։ Վերադառնալով Հայաստան, նրանց մի մասը սիրով ընդունեց միությունը, իսկ մյուս մասը Հովհաննես կաթողիկոսի[62] ժամանակ պառակտվեց (իմա հերետիկոսացավ), որի մասին այժմ մանրամասնորապես խոսելու կարիք չկա։ Այսպիսով նրանք նամակ գրեցին Աղվանից աշխարհի կաթողիկոս Աբասին հետևյալ բովանդակությամբ. «Եկ, միաբանիր մեր հավատքին՝ Քրիստոսի աստուծո մի բնության ընդունելուն և երեքսրբյան հիմնին ավելացրու «որ խաչեցար»-ը[63], իսկ նա չէր համաձայնվում։

Նույնպես և Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսին, սակայն նա ևս չէր համաձայնվում, ասելով, որ «ինձանից առաջ եղած երանելագույն եպիսկոպոսներ

---

59 Տիմոթեոս Կուզ։

60 Խոսքը Ցիլիքսենոսի մասին է։ Նա Գիրք թղթոցում հանդես է գալիս որպես «Փիլաքսոն Մաբուգ քաղաքի եպիսկոպոս» (էջ 451)։

61 Կրտսեր Վարդան Մամիկոնյանն է։ Հովհաննես Դրասխանակերտցին այս կապակցությամբ գրում է. «ապստամբեալ ի նմանէ (ի Խոսրովէ) Վարդան Մամիկոնեան սպանանէ զմարզպանն Սուրէն ի Դվին քաղաքի, և ինքն հանդերձ այլոց նախարարօքն գնայ ի ծառայութիւն Յունաց»։

62 Հովհաննես II Գաբեղյան (557—574)։

63 Հովհաննես կաթողիկոսի թուղթը Աղվանից Աբաս կաթողիկոսին մեզ հասել է։ Տե՛ս Գիրք թղթոց, էջ 81—84։

Պետրոսն[64] ու Գրիգորը[65] այդպես էին ասում «սուրբ ասված»-ը, իսկ ես ոչ կավելացնեմ ոչ էլ կպակասեցնեմ»:

Նրանք նույնպես գրեցին վրացիներին, որոնք խիստ պատասխան տալով չուզեցին հնազանդվել նրանց, այլև խայտառակ կերպով իրենց ուղարկված մարդկանց, որպես հերետիկոսների աշակերտների և հրեաների ասույթները վերականգնողների, վռնդեցին: Ոչ ոք չհնթարկվեց նրանց կամքին, բացի հայերենախոս[66] Տաշիր, Ձորափոր և Գարդման կոչված գավառներից, որոնք էլ Արցախից: Այդ ժամանակ մեծ խռովություններ էին տեղի ունենում իշխանների ապստամբության կապակցությամբ և Հունում, և Պարսկաստանում[67] և քսան տարի վիճում էին հավատքի շուրջը (ինչպես որ ասում է Օվսիեն. «Պատերազմ եղև ի վերայ որդւոցն անօրէնութեանց խրատել զնոսա և ժողովեցին ի վերայ նոցա ազգք խրատել զնոսա ի վերայ երկուց անիրաւութեանց նոցա»[68]), Հովհաննես և Մովսես[69] կաթողիկոսների օրերում, մինչև Խոսրով արքայի[70] առաջին տարին, երբ դա բարձրացավ Մավրիկիոս կայսեր[71] օգնությամբ, հռոմայեցիների մեծ հզորության ժամանակ:

Զորավար Մուշեղ Մամիկոնյանը, Տարոնեցի վերանվանյալը, գնալով Պարսկաստան և հաղթանակ տանելով հաստատեց Խոսրովին գահի վրա:

Նա թագավորեց ԼԷ [37] տարի. սա ամբողջ Հայաստանը մինչև Դվին տվեց Մավրիկիոս կայսեր, որի համար նրա կողմից արքա դարձավ: Նա (Մուշեղը) ինչպես և նրա զորքը նրա կողմից բազմաթիվ մեծարժեք նվերներ ստացավ: Նույն տարին պարսից արքա Խոսրովը Մուշեղին ուղարկեց Մավրիկիոսի մոտ: Նա ժամանելով Կոստանդնուպոլիս, պատվական խաչի մեծ տոնի օրը, իր ուղեկիցների հետ հրաժարվեց հաղորդությունից: Կայսրը հարցրեց և իմացավ պատճառը: Մուշեղն ասում էր, որ (չի հաղորդվում) «Քաղկեդոնի ժողովի պատճառով և որովհետև դուք ի վերա մեր տեր Հիսուս Քրիստոսի խոստովանում եք երկու բնություն»: Կայսրն ասաց. «Ձեր նախորդ Վարդանը, նրա ազատները և նրանց վարդապետները գրավոր համաձայնություն տվեցին խոստովանել երկու բնություն»: Մուշեղը պատասխանում է. «Նրանք այդ

64 Պետրոս Քերթող Սյունեցին մահացել է 558 թ.: Ստեփանոս Օրբելյանը նրան անվանում է «քաջ հռետորն և անյաղթ փիլիսոփայն, լի իմաստութեամբ և կատարեալ առաքինութեամբ, նախաթոռ վարդապետաց Հայոց, քերթող և թարգմանիչ»:

65 Վրթանեսի անմիջական նախորդը: Նրա անվան հայերեն ձևն է Գրիգոր: (Տես Ստեփանոս Օրբելյան, Պատմություն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 91):

66 Հունարեն տեքստում՝ οἱ λεγόμενοι κατὰ τὴν Ἀρμενίων διάλεκτον Τασίρ, Τζοραπόρ καὶ Καρτμαν, որ բառացի թարգմանելով ստացվում է՝ «Հայերեն լեզվով Տաշիր, Ձորափոր և Գարդման կոչվող»: Այսպես չէր կարող հայերեն բնագրում լինել: Սրա օգտին է խոսում նաև այն հանգամանքը, որ «Narratio»-ում բազմաթիվ հայկական այլ տեղանուններ են հիշված, բայց ոչ մի տեղ չի նշվում, որ այդ տեղանունները հայերեն այդպես են կոչվում: Οἱ λεγόμενοι κατὰ τὴν Ἀρμενίων διάλεκτον դարձվածքով հին թարգմանիչը «հայերենախոս» բառն է թարգմանել: «Հայերենախոս» բառը օգտագործել են դեռևս Ագաթանգեղոսն ու Կորյունը: Տե՛ս Նոր Բառգիրք Հայկազյան լեզվի, «հայերենախոս» բառը:

67 Ժ. Գարիտը ենթադրում է, որ այստեղ խոսքը բյուզանդացիների և պարսիկների միջև տեղի ունեցած պատերազմի մասին է, պատերազմ, որը սկսվեց 572 թ. Հուստինիանոս II-ի ժամանակ և տևեց մինչև Մավրիկիոս կայսեր թագավորության առաջին կեսը (591):

68 Օվսէէ, Ժ., 9—10:

69 Մովսես II Եղիվարդեցի: Նա կաթողիկոս դարձավ Հովհաննես II-ի մահից (574 թ.) հետո և կաթողիկոսության աթոռին նստավ 30 տարի:

70 Խոսրով II-ը (590—628):

71 Մավրիկիոս կայսր (602—610):

արեցին կամ անգիտության և կամ էլ վախի պատճառով։ Սակայն եթե դու ցանկանում հանգիստ լինել և սխալը արդարորեն ուղղել, ապա դու ճշմարտությունը կգտնես իմ վարդապետների մոտ»։ Կայսրը նամակներով հրաման ուղարկեց, որպեսզի Հայոց բոլոր եպիսկոպոսները և Մովսես կաթողիկոսը իր գահերերի հետ միասին ներկայանան Կոստանդնուպոլիս։ Իսկ Մովսես կաթողիկոսը ուշադրության չդարձրեց հրամանին ասելով. «Ես չեմ անցնի Ազատ գետը, չեմ ուտի փուռն հացը և չեմ խմի ջրախառն տաք գինի»։ Վասպուրական աշխարհի եպիսկոպոսները և նրանք ովքեր գտնվում էին Պարսից տիրապետության տակ նմանապես չցանկացան գնալ։ Իսկ Տարոնի եպիսկոպոսները և ովքեր որ գտնվում էին հոռոմայեցիների տիրապետության տակ գնացին Կոստանդնուպոլիս։ Երկար գննելուց հետո, նրանք հոռոմներից հաղորդվեցին և ստորագրեցին ու երդմամբ համամիտ դարձան նրանց։ Երբ նրանք վերադարձան Հայաստան, Մովսեսը նրանց չընդունեց նույնպես և Պարսկահայաստանի մյուս եպիսկոպոսները։ Նրանք իրենց կաթողիկոս ձեռնադրեցին Հովհաննեսին՝ Կոգովիտի Բագարան գյուղից։ ԺԴ [14] տարի, մինչև Մավրիկիոս կայսեր վախճանը, նրանց միջև հարաբերությունները սրված էին՝ Քրիստոսի երկու բնությունների և Քաղկեդոնի ժողովի հարցում։

Նրա վախճանից հետո Պարսից Խոսրով արքան գրավեց Հայոց աշխարհը։ Դա այն ժամանակ էր, երբ հերետիկոս Աբրահամը[72] կաթողիկոս դարձավ։ Այդ նույն տարին նա ստիպեց եպիսկոպոսներին, երեցներին և վանահայրերին նզովել Քաղկեդոնի ժողովը, հակառակ դեպքում հեռանալ երկրից։ Նրանք նզովեցին և վեճը դադարեց[73]։

Երեք տարի անց պատերազմ տեղի ունեցավ Բասենում և պարսիկները պարտության մատնեցին հոռոմայեցիներին, պաշարեցին Կիթարիճ քաղաքը և Թեոդոսուպոլիսը՝ Փոկաս կայսեր[74] Ե [5] տարին և Խոսրովի Ի [20] տարին։ Նրանք գրավեցին բազմաթիվ այլ քաղաքներ, (գերեցին) նաև Հովհաննես կաթողիկոսին, որը թեպետ Հայաստանում էր գտնվում, բայց ենթարկվում էր հոռոմայեցիներին։ Այն ժամանակ էր, որ հերետիկոս Աբրահամ կաթողիկոսը ստիպեց Հովհաննեսի բաժնի եպիսկոպոսներին նզովել Քաղկեդոնի ժողովը, հակառակ դեպքում հեռանալ Հայաստանի շրջաններից։ Վերջիններս չհամաձայնվեցին և նրանցից ոմանք անցան Տայք, ոմանք հոռոմոց երկիրը և վախճանվեցին օտարության մեջ։

Ապա (աթոռ նստավ) հերետիկոս Կոմիտաս կաթողիկոսը[75], որի ժամանակ բազում խռովություն և ավերածություններ տեղի ունեցան հոռոմոց աշխարհում Խոսրովի ձեռքով։ Նա (Կոմիտասը) բոլորից սուր կերպով գրգռեց վեճը՝ նզովելու համար Քաղկեդոնի ժողովը։ Նա բազմաթիվ ճառեր գրեց իր սեփական անվամբ, կանոններ և տիպեր՝ սուրբ Սահակի անվամբ, որոնց թվում և հայերեն լեզվով Ավարտական[76] կոչված գիրքը[77]։ Նա ուզում էր, որ իր աթոռը ժառանգի ոմն Հովհաննես[78], բայց դա չեղավ, և այն ժառանգեց Քրիստափորը[79]։

---

72 Աբրահամ I Աղբաթանեցի (607—610)։

73 Այս մասին տե՛ս Գիրք թղթոց, էջ 151—152։

74 Փոկաս (602—610)։

75 Կոմիտաս I Աղցեցի (610—628)։

76 Կարդա՝ Հավատարմատ

77 Արանձի տեքստում, ինչպես և Ստեփանոս Տարոնեցու մոտ, այս գրական գործունեությունը վերագրվում է ոչ թե Կոմիտասին, այլ Հովհան Մայրագոմեցուն։

78 Խոսքը Հովհաննես Մայրավանեցու (Մայրագոմեցու) մասին է։

79 Քրիստափոր II Ապահունի (628—630)։

Երբ Քրիստափորը զրկվեց աթոռից, Հովհաննեսն ուրախացավ, բայց այդ ժամանակ ևս նրան ոչինչ չհաջողվեց անել։ Որովհետև կաթողիկոս դարձավ Եզրը[80]։ Հովհաննեսը մոլեգնեց և չար աչքով էր նրան նայում նրա (կաթողիկոսության) ժամանակ։

Խոսրովի մահվան Դ [4] տարին և Հերակլի[81] թագավորության ԻԳ [23] տարին (Հերակլը) գալով Մեծ Հայք հրամայեց Թեոդոսուպոլսում մեծ ժողով գումարել՝ բոլոր եպիսկոպոսների և վարդապետների, կաթողիկոս Եզրի և բոլոր ազատների մասնակցությամբ, քննելու և եզրակացության հանգելու համար Քրիստոսի՝ մեր աստծո երկու բնությունների և Քաղկեդոնի ժողովի հարցի շուրջը։ Երեսուն օր նրանք քննեցին այդ հարցը և հայերը համոզվեցին (սուրբ հայրերի) գրքերից և իրենց ձեռքով ստորագրեցին ու երդվեցին այլևս այդ մասին երբեք չհակաճառել։

Վերադառնալով Դվին, նույն այն Հովհաննեսը գրգռեց իր կրոնակիցներին. Գարդմանի եպիսկոպոս Ստեփանոսին և Սյունյաց Մաթուսաղային[82] և մի քանի ուրիշների, որոնք չէին գնացել ժողովի, չհաղորդվել ոչ կաթողիկոս Եզրի, և ոչ էլ նրա համախոհների հետ։ Մի քանի օր անց վերոհիշյալ Ստեփանոսը եկավ Եզր կաթողիկոսի մոտ։

Հովհաննեսն իմանալով, որ (Ստեփանոսը) անցել է նրա (Եզրի) կողմը, մեծ զայրույթով թշնամացավ Ստեփանոսի դեմ, նույնպես և Մաթուսաղայի դեմ, որովհետև նա ևս անցավ Եզրի կողմը։ Հովհաննեսն ասում էր, որ «Ձեր մեղքերի հետ համեմատած Եզրի մեղքը ավելի թեթև է, որովհետև նա կայսեր երկյուղից էր, որ շեղվեց ճշմարիտ ճանապարհից, իսկ դուք սնափառությամբ և կաշառքով է որ անբուժելի մեղքի մեջ ընկաք»։

Եզրը դիմեց նույն Հովհաննեսին ասելով. «Երկիցս հրավիրեցի քեզ էլ, Մաթուսաղային էլ, Ստեփանոսին էլ, ասելով, որ «մեր երկրի վարդապետներն ու գրքերը դուք եք. թող գայիք և պատասխան տայիք կայսեր, չէ՞ որ նա բոլորին էլ հրավիրել էր։ Դուք արհամարհեցիք ու չեկաք, և այժմ մեղադրում եք մեզ, որպես նրան համամիտ դարձած։ Մենք ինչ որ նրանցից լսեցինք ճշմարիտ համարեցինք և խոստովանեցինք մեր տիրոջ Հիսուս Քրիստոսի երկու բնությունը՝ կատարյալ աստված և կատարյալ մարդ, մեկ անձնավորության և մեկ դեմք և անբաժան անօրինության մեջ։ Եվ սուրբ հայրերի գրվածքները, որոնք մենք ընթերցեցինք, և մեր (գրվածքները) նույնի մասին վկայեցին և մենք համոզվեցինք նրանց ասածներին, որոնք համաձայն են սուրբ գրոց։ Այժմ դեռ շատ ժամանակ չի անցել և սուրբ հայրերի բոլոր գրվածքները մեզ մոտ են, ստուգեցեք և իմացեք ճշմարտությունը»։ Եվ երբ նա ցույց տվեց (սուրբ) գրոց վկայությունը, հակառակորդ Հովհաննեսն ասաց. «Այդ բոլորը սուրբ հայրերի գրոց մեջ նեստորականներն ավելացրին ինչպես ժամանակին Սատուրնիլոսը[83] սուրբ գրոց մեջ բազմաթիվ հերետիկոսական (մտքեր) էր ավելացնում, ինչպես օրինակի համար, ըստ Ղուկասի ավետարանին, որ «Սկսաւ Յիսուս տրտմել եւ հոգալ. եւ երեւեցաւ նմա հրեշտակ յերկնից եւ զօրացուցանէր

---

80 Եզր I Փառաժնակերտացի (630—640)։

81 Հերակլիոս (610—641)։

82 Սյունյաց եպիսկոպոս Մաթուսաղային հիշատակում է Ստեփանոս Օրբելյանը։ Նրան նա անվանում է «մեծ քերթող և անյաղթ փիլիսոփայն» (գլ. ԻԸ)։

83 Գնոստիկյան աղանդի պարագլուխը։

գնա» և որ «եւ մտադիւրութեամբ եւս կայր յաղօթս: Եւ հանէին ի նմանէ քրտունք երբեւ զկայլակս արեան» և նմանները[84]: Հովհաննեսի այս խոսքերը Եզրին էլ, նրա կողմնակից եպիսկոպոսներին էլ հակառակ թվացին և բոլորը հեռացան նրանից այդ խոսքերից գրգռված:

Իսկ նա շարունակում էր վիճել: Դրա համար էլ նա ստացավ հակառակորդ անունը: Որովհետև խոսքի զորությունը բարի մարդկանց համար դառնում է առաքինության զենք, իսկ չար մարդկանց համար՝ չարության փուշ:

Եզրի մահից հետո, նա կարծում էր, թե ինքը իշխանների օգնությամբ կստանա աթոռը: Բայց երբ աթոռն ստացավ Ներսեսը[85], նա առավել ևս հուզվեց, որովհետև համարում էր, որ նա համահավասարակից էր հռոմայեցիների կայսեր: Նա բոլորին մղում էր հակաճառության, ասելով, որ նա ևս Եզրի պես մոլորվեց: Ներսեսը բացահայտ հրավիրեց նրան և բազմաթիվ եպիսկոպոսների, վարդապետների և ազատների ներկայությամբ մանրամասն քննության ենթարկեց հակաճառությունը: Նրան աքսորի դատապարտեցին և նա կաթողիկոսի ու Հայոց իշխանի[86] կողմից աքսորվեց: Նրա ու նրա ընկերների ճակատին շիկացած երկաթով աղվեսադրոշմ խարանեցին, իսկ նրան արտաքսեցին Կովկաս լեռը:

Այնտեղից նա վերադարձավ, որովհետև հալածվեց տեղի կառավարիչների կողմից և Անաստաս (կաթողիկոսի)[87] մահից հետո եկավ Հայաստան իր ծննդավայրը ու վախճանվեց խոր ծերության մեջ[88]: Նրա աշակերտները բազմանալով բոլորին շեղեցին ճշմարտության ուղուց և նրանց հերձվածը այդ երկրում տարածվեց մինչև Հուստինոս կայսեր[89] (ժամանակ):

Նա իր (թագավորության) 6 տարին կաթողիկոս Սահակին[90] և նրա եպիսկոպոսներին Կոստանդնուպոլիս հրավիրելով, միացրեց նրանց մեր տիրոջ և աստուծո երկու բնությունը՝ աստվածային և մարդկային, մեկ անձնավորությամբ անշփոթ և անբաժանելի ընդունողների հետ և նրանք գրավոր երդում տվեցին այլևս չհակառակվել: Նրանք երբ վերադարձան, Հայաստանում մնացածները խորշում էին նրանց վերակացությունից, որպես հոռոմներին հարած և հակառակվում ու վիճում էին Սահակի և նրա հետ գնացողների հետ, ասելով, որ «եթե դարձի չգաք և չխզվեք նրանցից, չենք ընդունի ձեզ մեր երկրում»: Իսկ նրանք սիրելով մարդկային փառքը և ոչ աստուծո[91], նորից նզովեցին նախ իրենց, որպես հոռոմների հետ հաղորդված, ապա հոռոմներին և այդպիսով ցույց տվեցին, որ նրանք անբուժելի են իրենց չարության մեջ: Այսպիսիների մասին է, որ Պետրոս առաքյալն ասել է. «Զի եթէ փախուցեալք ի պղծութեանց աշխարհի՝ գիտութեամբ Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի, և դարձեալ ընդ նոյնս շեղեալք պարտիցին, եղեւ նոցա վախճանն չար քան զառաջինն:

---

84 Բստ Մատթեոսի, ԻԶ 37: Բստ Ղուկասու, ԻԲ, 43—44:

85 Ներսես III Տայեցի (Իշխանցի) (642—662):

86 Արդենը և Փոտի նամակը մեզ տալիս են այս իշխանի անունը: Դա Թեոդորոս Ռշտունին է:

87 Անաստաս Կաթողիկոսը փոխարինեց Ներսես Գ-ին: Նա վախճանվեց 667 կամ 668 թ.:

88 Արդենը տալիս է նրա մահվան թվականը՝ Հայոց 133 թ. (684 թ.):

89 Հուստինիանոս II (685—695, 705—711):

90 Սահակ III, աթոռակալել 678—705 թթ.:

91 Բստ Հովհաննու, ԺԲ, 43:

Զի լաւ էր նոցա եթէ ընաւ իսկ չէր ծանուցեալ զարդարութեանն ճանապարհ, քան զի ծանեան և յետս կացին ի սուրբ պատուիրանէն որ նոցա աւանդեցաւ: Եկեալ ի դէպ նոցա ճշմարիտ առակին զգօնութեան. եթէ շուն դարձաւ անդրէն ի փսխած իւր, և խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ»[92]:

Р. М. БАРТИКЯН

## «NARRATIO DE REBUS ARMENIAE»—АРМЯНСКИЙ ХАЛКЕДОНИТСКИЙ ПЕРВОИСТОЧНИК, ДОШЕДШИЙ ДО НАС В ГРЕЧЕСКОМ ПЕРЕВОДЕ

(Резюме)

В данной статье дается армянский перевод одного важного источника, который в свое время был написан на армянском языке, затем переведен на греческий. Армянский оригинал был утерян, сохранился лишь его греческий перевод.

«Narratio» является трудом анонимного автора, халкедонита по вероисповеданию, сторонника объединения армянской монофизитской церкви с византийской. Описание разных фактов, известных нам по монофизитским источникам, здесь дается в совершенно другом освещении. Кроме того, в «Narratio» мы встречаемся с разными сведениями, которых мы не находим в других армянских первоисточниках.

Перевод «Narratio de rebus Armeniae» сделан нами с критического издания греческого текста, опубликованного Ж. Гариттом.

H. M. BARTIKIAN

## «NARRATIO DE REBUS ARMENIAE» SOURCE ARMENIENNE DE CHALCEDOINE QUI NOUS EST PARVENUE DANS SA TRADUCTION GRECQUE

L'auteur présente la traduction arménienne d'un ouvrage qui, écrit d'abord en arménien, ne s'est conservé que dans sa version grecque.

De religion chalcédonienne et partisan en son temps de l'unification des églises monophysite et byzantine, l'auteur de «Narratio» est resté anonyme.

Cet ouvrage où nous retrouvons, sous un aspect et un jour nouveaux, des faits rapportés par les sources monophysites, est d'un intérêt considérable. «Narratio» est encore précieux par cela même qu'il renferme bien des données que les sources arméniennes ne sauraient nous fournir.

«Narratio de rebus Armeniae» a été traduit sur le texte grec publié par G. Garitte.

---

92 II Թուղթ Պետրոսի, Բ, 20—22: